հինգ հարիւր տրամի կ՚ընեն։ Հետեւա֊բար, ձեռքս ի՞նչ կը մնայ։ Եւ եթէ նոյն֊իսկ ենթադրենք թէ միայն ինքնաշարժե֊րու եւ սուրճերու գիները աւելցան եւ միւս գիները ոչ, թօշակիս վրայ եղած ամբողջ յաւելումը անոնց կ՚երթայ եւ յաւելումէն ինծի կը մնայ հինգ հարիւր տրամի։ Ըսէ տեսնեմ, ի՞նչ ընելու եմ։

Ի՞նչ ըսէի։ Հաշիւը ելեւմտական Պ. Նա֊խարարին կը յղեմ, որպէսզի անգամ մըն ալ քննէ։ Թերեւս սխալներ եղած են գու֊մարումներուն կամ բարձումներուն մէջ։

Թարգմ. Ե. Տ. ՓՍԱԹԱՍ

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

### ՖՐԱՆՍ. ՕԴԱՆԱՒ ՄԸ ԽՈՐՏԱԿՈՒԱԾ

Էռ –Ֆրանսի մէկ օդանաւը, որ Փարի֊զէն Թեհրան կ՚երթար, անհետացած է 41 ուղեւորներով (33 ճամբորդ, ութ օդա֊չու), Անատոլուի ափերուն վրայ։ Կը կարծուի թէ ծովը ինկած է։

Օդանաւը (Քոնսթելասիոն) օժտուած է նաւակներով, բայց մանրամասնութիւն֊ներ կը պակսին վերջնական ելքի մասին։ Ամէն կողմէ օգնութեան հասած են բազ֊մաթիւ օդանաւեր եւ մարտանաւեր։

✕ Փաքիստանեան օդանաւ մըն ալ խոր֊տակուեցաւ 21 ուղեւորներով։ Լուր չկայ ուրիշ Ֆրանսական օդանաւէ մը որ 75 ճամբորդ ունէր։

★

ՄԱՆՇԸ ԼՈՂԱԼՈՎ անգլիական ափէն Ֆրանսա անցաւ 23 տարեկան Եգիպտացի մը, Լաթիֆ Ապու Հայֆ, 13 ժամ 45 վայրկեանէն։ Նախորդ մրցանիշն էր 15 ժամ 35 վայրկեան։

«ԻՒՄԱՆԻԹԷ», համայնավար կուսակ֊ցութեան պաշտօնաթերթը, կը գրէ թէ ձերբակալուած են Ալեքսանդր Կոստան֊դինեան եւ Միշէլ Մավեան։ Այս առթիւ հրատարակած է նաեւ Միսաք Մանուշեա֊նի լուսանկարը, յիշելով անոր դերը դի֊մադրական ճակատին մէջ եւ գնդակա֊հարումը Նացիներու կողմէ (21 Փետր. 1933)։

ԸՆԴՀ. ՆԵՐՈՒՄԷՆ օգտուելով ազատ արձակուեցաւ Անրի Մարթէն, 26 տարե֊կան համայնավար մեքենագէտ մը որ հինգ տարի բանտարկութեան դատապարտուած էր 1950ին, Թուլոնի մէջ, այն ամբաստա֊նութեամբ թէ ձեռնարկներ կատարած է Հնդկաչինի պատերազմին դէմ, բանակը կազմալուծելու համար։ Թերթերը կը գրեն թէ բանտէն ելլելով շիտակ «Իւմա֊նիթէ»ի խմբագրատունը գնաց, մեծ զար֊մանք պատճառելով։ Պաշտօնաթերթը, որ բուռն պայքար կը մղէր Մարթէնի հա֊մար, այժմ կը պահանջէ միւս համայնա֊վար բանտարկեալներուն արձակումը։

ԳԵՐՄԱՆԻՈՅ կայսերական գերդաստա֊նէն՝ Հոհէնցոլերններու գոհարեղէնները գողցուած են խորհրդաւոր պարագանե֊րու մէջ։ Արժէքը՝ 7.500.000 տոլար։

ԵԼՄՏԱԿԱՆ նոր օրէնքները պիտի հրա֊տարակուին Օգոստոս 8ին։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ.

Թարգմանութիւն, ներածութիւն եւ ծանօթութիւններ դոկտոր Ստ. Մալխասեանի։ Ընտիր թուղթի վրայ եւ գեղեցիկ տպագրութեամբ, լաթա֊կազմ. 600 էջ։ Տպ. «Յուսաբեր», Գահի֊րէ. 1953։ Գին 3 տոլար։

Փնտռել հայ գրավաճառներու մօտ։

ՓՆՏՌԵՑԷՔ

### ՌՈՒԲԷՆԻ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար։

Եօթը հատորը միասին, կ՚արժէ վեց հազար Ֆր. թղթատարի ծախքով։

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները
Contre remboursement
կամ անձամբ դիմել Ցառաջի վարչու֊թեան։

## ԽԱՆԱՍՈՐԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Խանասորի հերոսամարտը կը տօնուի Մարսէյլի մէջ Օգոստոս 9ին, Վալապրի անտառը։

Շրջ. կոմիտէն կը հրաւիրէ ենթակո֊միտէներուն եւ խումբերուն, որ օր առաջ կարգադրութիւններ ընեն հաղորդակցու֊թեան միջոցներ ապահովելու համար։

Հ. Ց. Դ. Մարսէյլի Քրիստափոր են֊թակոմիտէի վարչութիւնը ինչպէս ամէն տարի, այս անգամ եւս, հանրակառք (օ֊թօքար) ապահոված ըլլալով՝ կը խնդրէ յարգոյ հասարակութենէն այժմէն ճարել իրենց տոմսերը, դիմելով.— Գրավաճառ Պ. Տէրիկեանի, ընկեր Ա. Քէօսէեանի եւ ընկեր Արիստաքէս Պետրոսեանի։

Տեղերը սահմանափակ ըլլալով կը խնդ֊րուի կանխաւ ապահովել տոմսերը, խճո֊ղումի տեղի չտալու համար։

Օթօքարը Փլաս տ՚Էքսէն կը մեկնի ժա֊մը 7ին։



### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանի Ա. խումբը կը վերադառնայ Օգոստ. 7ին, ծնողներէն կը խնդրուի Օսթէրլիցի կայա֊րանը գտնուիլ առտուան ժամը 7ին։

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի նոյն օ֊րը։ Մեկնողները պէտք է Օսթէրլից գտ֊նուին առտուան ժամը 7ին, կիչէներուն մեծ բակին մէջ։

ԼԻՄՈՆԷՆ օդափոխութեան կայան, մեկ֊նելիք պզտիկները, այս ուրբաթ երեկոյ֊եան ժամը 17ին, իրենց գոյքերով հաւաք֊ուին Փէրաշի կայարանին դուրսի դրանը առջեւ, կառախումբը կը մեկնի ժամը 18.54ին։

ՏԷՍԻՆ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղը իր դաշտահանդէսին առթիւ շնորհակալու֊թեամբ ստացած է Պ. Մեղրոյեանէն հա֊զար ֆրանք։

## ՍՏԱՑԱՆՔ

ՀԱՅ ԵՐԳԵՐ, Աշոտ Պատմագրեանի (Դուդուկ, Եալալի, Եար Գիւլա Դիլբար, Սիրտս, Իմ Գարուն)։ Ձայնագրուած։ Գին երկու տոլար։

Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Արձակուրդի առթիւ հասցէի փոփոխու֊թիւնը հարիւր ֆրանք։

Արձակուրդի շրջանին համար կ՚ընդունինք մէկ ամսուան բաժանորդագրութիւն, 300 ֆրանք։

ՆՈՒԷՐՆԵՐ.— Ողբացեալ Տիգրանուհի Հայթաեանի մահուան առթիւ, Տամլամ֊եան ընտանիքը եւ պարագաները 4000ա֊կան ֆրանք (համագումար 16000 Ֆր.) կը նուիրեն Փարիզի եկեղեցւոյ կրթ. մարմ֊նին, Հայ Տիկնանց Միութեան, Փարիզի Որբերու Օգն. Մարմնոյն, Կարմիր Խաչի եւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն։

Ստանալ Փարիզի եկեղեցւոյ դիւանա֊տունէն։



Օր. ՄԱՏԼԷՆ ՉՊՈՒՔՃԵԱՆ
Պ. ՓԻԷՌ ՊԱՐՈՆԵԱՆ
Ամուսնացած
Փարիզ, 1 Օգոստ. 1953

Օր. ԱՅՏԱ ԿՐԻՆ (ԿԻՒՐԻՆԼԵԱՆ)
Պ. ՄԿՐՏԻՉ ՉՊՈՒՔՃԵԱՆ
Ամուսնացած
Թրիփօլի (Լիբանան) 2 Օգոստ. 1953

### ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կը վերաբացուի Սեպտ. 17ին։ Արձանագրու֊թեան համար դիմել վարժարան հինգ֊շաբթի եւ շաբաթ առաւօտ ժամը 9-12։
Հեռաձայն Ռէնսի 172

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԸ «Les Simianes» - ի ՄԷՋ (Haute - Jarrie) ԿՐԸՆՈՊԼԻ ՇՐՋԱՆ

Օգոստոս չորսէն մինչեւ 30
E. Mavian, 2, Rue des Dardanelles
Etoile 34 - 78

Անոնք որ Նոր Սերունդի անդամ չեն եւ կը փափաքին մասնակցիլ, պէտք է դիմեն իրենց շրջանի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի վարչութեան։

ՊԱՅՄԱՆՆԵՐ.— Օրական 400 Ֆր. եւ 1000 Ֆր. բնակավայրի վարձք, (հինգ օ֊րէն պակաս մնացողներու համար 500 ֆրանք)։ Ճամբու ծախքը մասնակցողնե֊րուն վրայ։ Խմբովին ճամբորդողները մասնաւոր զեղչ կը ստանան տոմսակի ար֊ժէքին վրայ։

ԱՆՀՐԱԺԵՇՏ ԳՈՅՔԵՐ.— Սաւան, վերմակ, բարձ, կերակուրի սպաս եւ ան֊հատապէս անհրաժեշտ համարուած գոյ֊քեր։

ԾԱՆՕԹ.— Առանձին եկողներուն հա֊մար բնակավայրի հասցէն՝

Chateau «Les Simianes»
Chez Mme Marcombe, Haute-Jarrie, Isère

Կրընոպլէն օթօքարի սպասարկութեան համար դիմել՝

«Car de Mr Lazier, au Bar de la Verveine»
Bureau des Postes de Grenobleի քովը

ժամանակ կայ Մոնթրէոյի համաձայնութեան հարցը քննելու համար, մանաւանդ որ արդէն կան չատ մը խնդիրներ, որոնք առ այժմ կը զբաղեցնեն Թուրք կառավարութիւնը ,ինչպէս ըսաւ արտաքին նախարարը :

Թուրքիոյ արտաքին քաղաքականութեան մօտէն ծանօթները կրնան հասկնալ թէ Թուրքերը ի՛նչ դիրք պիտի բռնեն Ռուսերուն հանդէպ, այս հարցին մէջ» :

Անգարայի դիւանագիտական չրջանակներուն մէջ այն կարծիքը կը տիրէ թէ հելլէն — Թուրք — եուկոսլաւ բալկանեան դաչինքին ստորագրութիւնը առիթ տուաւ ռուսական այս քայլին :

Կ'ըսուի թէ այս դաչնագիրը բուռն ընդդիմութիւն ստեղծած է Ռումանիոյ եւ Պուլկարիոյ մէջ, իսկ միւս կողմէ, դաչնագիրը կողմերուն ապահոված է զինուորական, դիւանագիտական եւ քաղաքական արդիւնքներ, աւելի՝ քան կ'ակնկալուէր :

— « Երեք տարի առաջ, այս չրջանը ամենատկար կէտն էր խորհրդային զօտիին մէջ, իսկ այսօր ամենազօրաւորն է », ըսած է դիւանագէտ մը : Ասիկա արդիւնքն է առաւելապէս Պալքաններու հանդէպ Սովետներու հետեւած սպառնական քաղաքականութեան, եւ այս պարագան էր որ հարկադրեց Մոսկուան դիջումներ ընելու :

ձակելով Տոքթ. Ֆաթեմին եւ միւսները:

× Այն արքայական օդանաւը որ Իրաք փոխադրեց Շահը եւ Սորայա Թագուհին, ճամբայ ելած էր Ռամսարէն (Կասպից ծով) : Շահին մեկնումէն առաջ Տոքթ. Ֆաթեմի յօդուած մը հրատարակելով « Պախտար » թերթին մէջ, « Գեղեցիկ պսակներով օձ մը» կը կոչէր զայն: Եւ կ'ըսէր թէ ան է պատասխանատուն կառավարութեան եւ ազգին դէմ սարքուած բոլոր դաւերուն, նաեւ « Անգլիացիներուն անարգ ծառան», ինչպէս նախկին Թագաւոր Ֆարուքը: Այս առթիւ ան զրկեց Շահին նուիրած չքանչանը :

× Զօր. Զահետի, որ իր թաքստոցը հաստատած էր Թեհրանի մօտակայ բլուրի մը մէջ, մամուլին զրկած է պատճէնը այն կայս. հրամանագրին որով իրեն կը յանձնուի վարչապետութիւնը: Հրամանագիրը Եշ. օրուան թուականը կը կրէ, հետեւեալ բովանդակութեամբ. — « Կացութիւնը կը պահանջէ անուանել բանիմաց եւ փորձառու անձ մը՝ ձեռք առնելու համար երկրին ղեկը: Հետեւաբար, գիտնալով ձեր կարողութիւնը եւ արժանիքը, այս նամակով ձեզ կը նչանակենք վարչապետ եւ կը պարտականութիւն կը դնենք ձեր վրայ բարելաւել երկրին վիճակը, դարմանել ներկայ տագնապը եւ բարձրացնել ժողովուրդին մակարդակը :

Զօր. Զահետի առանձին յայտարարութիւն մըն ալ հրատարակելով կ'ըսէ .— « Կ'ուզենք կառավարութիւն մը որ հնազանդի օրէնքին եւ սահմանադրութեան եւ յարգէ ամբողջ ժողովուրդը » :

«ՊԷՏՔ Է ԿԱԽԵԼ ՇԱՀԸ »

Արտաքին նախարար Ֆաթեմի, որ դաւադիրներուն կողմէ ձերբակալուած եւ յետոյ ազատ արձակուած էր, կը գրէ կառավարութեան կիսապաշտօնական օրկանին մէջ.

— « Օ՛ստոր դաւաճան, որուն հայրը Խուզիստանի քարիւղաբեր նահանգը ծախեց Անգլիացիներուն եւ որ կեդրոնն էր բոլոր հակազգային դաւերուն իր քոյրերուն, եղբօրը եւ մօրը հետ. ազգը կ'ուզէ որ դատուիս մասնաւոր ատեանի մը առջեւ եւ կախուիս կառափնատէ մը՝ քու դաւաճանութիւններուդ համար » :

× Թեհրանէն կը հեռագրեն թէ Բշ. օր ամբոխը վար առաւ փախստական Շահին պատկերները եւ արձանները, քաչկռտելով եւ կոխոտելով փողոցներուն մէջ : Ոստիկանութիւնը միջամտեց, բայց խուժանը կը մոնչէր մահապատիժ պահանջելով եւ լլիրչ խօսքեր արտասանելով Շահին դէմ : Վեհապետին եւ իր հօրը արձանները վար առնուեցան, ագարտուեցան եւ կառքերու կապուելով քաչկռտուեցան փողոցէ փողոց: Աւելի մոլեռանդներ Շահին հօրը դամբարանն ալ քանդեցին :

.............

ԴԷՊԻ ԱՆԴՈՒՆԴ իջնելու նոր փորձ մը կատարուեցաւ փիէռ Սէն Մարթէնի քարայրին մէջ (Ֆրանքեւսպանիական սահմանագլուխ): Սպանիացի գիտնական մը, Եօղէ Կարսիա, երբ անդունդը կ'իջնէր Ֆրանսացի Քազնաւի հետ, ինկաւ 15 մեթրը խորութենէ մը եւ կախուած մնաց անդունդին վրայ: Անկումի պղումին վրայ, ընկերը աճապանդ հնչեցուց, վեր բարձրանալով եւ հասած օգնութեանց չնորհիւ նորէն վար իջնելով յաջողեցաւ փրկել արկածեալը, չորս ժամուան տաժանելի աշխատանքէ մը վերջ: Կարսիա վիրաւորուած էր դէմքէն եւ գլուխէն եւ ուշաթափ վիճակ մը ունէր:

ՅՈՆԻԱԿԱՆ ԿՂԶԻՆԵՐԷՆ հասած վերջին լուրերը զարհուրելի մանրամասնութիւններ կը հաղորդեն երկրաշարժի աւերներու մասին: Զանթայի երեք հազար չէնքերէն մնացած են միայն երկու տուներ եւ եկեղեցի մը: Աշխարհի բոլոր մասերէն օգնութիւն կը հասնի: Քեֆալոնիա, Իթակէ եւ Զանթա կղզիները աւերակներու կոյտեր են այլեւս: Անգլ. եւ Ամերիկ. օդանաւեր օրական 30.000 պարէն կը բաժնեն մինչեւ հեռաւոր գիւղերու մէջ : Կառավարութիւնը կ'աշխատի համաճարակներու առաջքը առնել եւ պատսպարան ճարել ողջ մնացողներուն, դաչնակիցներուն օգնութեամբ: Բժիշկները գերմարդկային ճիգեր կը թափեն դարմանելու համար բազմաթիւ հիւանդներ որոնց ջիղերը քայքայուած են արհաւիրքէն :

ՏԱՐԵԿԱՆ ԱՐՁԱԿՈՒՐԴԻ երթուղարձի տոմսակները, որոնց պայմանաժամը լրացած է գործադուլի ընթացքին, պիտի կրնան օգտագործուիլ առանց նոր ձեւակերպութեան, երբ երկաթուղիներու երթեւեկը վերսկսի :

## ՎԱՐՉԱԿԱՆ ԱԶԴ

Ջերմապէս կը խնդրենք մեր գաւառի գործակալներէն եւ բաժանորդներէն շարունակել իրենց վճարումները չէք-փոստալի միջոցաւ, դիւրացնելու համար վարչութեան գործը, մանաւանդ որ թղթատարական գործադուլը մեծապէս վնասած է նաեւ մեր գանձումներուն:

Մեր բոլոր բաժանորդները պիտի ստանան իրենց թերթերը ամենչապէս որ թղթատարը ընդունի: Ներողութիւն կը խնդրենք այս ակամայ յապաղումներուն առթիւ: ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը ցաւինք որ կարելի չըլլար ղրկել բաժանորդներուն թերթերը, թղթատարական գործադուլին հետեւանքով :

Կարգ մը կարգադրութիւններ եղած են մօտակայ արուարձաններու համար:

Այսպէս, Իսի լէ Մուլինոյի բաժանորդները իրենց թերթերը կրնան ստանալ Զատիկեան սրճարանէն :

×

ԱԼՖՈՐՎԻԼԻ բաժանորդներն ալ կրնան իրենց թերթերը ստանալ դիմելով ընկեր Բարթող փափազեանի:

×

ԳԼԱՄԱՐԻ բաժանորդներն ալ կրնան իրենց թերթերը ստանալ ընկեր Հրանտ Սամուէլէն :

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կը վերաբացուի Սեպտ. 17ին: Արձանագրութեան համար դիմել վարժարան հինգչաբթի եւ չաբաթ առաւօտ ժամը 9-12:

Հեռաձայն Ռէնսի 172



ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆ. Կ. Խաչի Ալֆորվիլի վարչութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ Այրի Տիկին Մարիամ Մինասեանի եւ զաւակին, իրենց ամուսնոյն եւ հօր՝ ՅԱԿՈԲ ՄԻՆԱՍԵԱՆի մահուան առթիւ, եւ փոխան ծաղկեպսակի 2000 Ֆր. կը նուիրէ Պրեւանի ապաքինարանի հայ հիւանդներուն :









Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

ները կը չարունակուին, միջին ճամբայ մը գտնելու համար :

Ընկերվարական կուսակցութիւնը նամակ մը ուղղեց վարչապետին, «զարմանք» յայտնելով կառավարութեան բռնած դիրքին հանդէպ: Պատուիրակութիւնը անգամ մը եւս կը յիշեցնէ թէ համաձայն է բանթողներու պահանջներուն եւ կը յուսայ թէ կառավարութիւնը պիտի լսէ իրենց թելադրութիւնները :

Կուսակցութիւնը կը պահանջէ անմիջապէս նիստի հրաւիրել Ազգ. Ժողովը եւ հաւաքական պայմանագիրներու յանձնաժողովը :

Ցարդ արտակարգ Ազգային Ժողովի գումարումը պահանջած են 228 երեսփոխաններ, իսկ նամակներով հաստատած են՝ 196 հոգի: (Օրինական մեծամասնութիւնն է 209) :

× Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, երկաթուղիներու սպասարկութիւնը հետզհետէ կ'աւելնայ հեռաւոր գիծերու վրայ: Փարիզի արուարձաններուն երկաթուղիները դեռ չեն բանիր : Մեթրօն դեռ ամբողջովին չի գոհացներ ժողովուրդին պահանջները: Թղթատարական վարչութիւնը հետզհետէ կը կանոնաւորէ նամակներու առաքումը եւ բաշխումը : Նախարարութիւնը կը ծանուցանէ թէ 220.000 պաշտօնեաներուն 73 հազարը կը շարունակեն գործադուլը, 30 հազարը արձակուրդի գացած են: «Շէք փոստալ»ի սպասարկութիւնը վերահաստատուած է 50 առ հարիւր: Փարիզի հանրակառքի պաշտօնեաները 24 ժամ եւս երկարաձգեցին գործադուլը: Գործատէրերու Միութիւնը յայտարարեց թէ ժամանակը չէ քննելու աշխատավարձքի ընդհ. յաւելման խնդիրը :

Մետաղագործական բանուորները որոշեցին աշխատանքը դադրեցնել 48 ժամ, սկսելով Ուրբաթէն (այսօր եւ վաղը), իսկ շինութեանց բանուորները գործադուլ սարքած են 24 ժամուան համար: Աշխատանքի Դաշնակցութիւնը գործադուլներ կը սարքէ նաւահանգիստներու մէջ :

× Գործադուլին հետեւանքով ոսկին կը բարձրանայ քանի մը օրէ ի վեր: Գչ. օր ձոյլ ոսկին կը ծախուէր 486.000 Ֆր.ի : Դչ. օր բարձրացած էր 501.000ի: Գործադուլէն առաջ գինը 473.000 Ֆր. էր : Օտար դրամներն ալ բարձրացած են: Տոլարը, որ 391 Ֆր. էր, առջի օր բարձրացաւ 414ի (ազատ շուկայ), սթերլինը՝ 1090ի, զուից. Ֆրանքը՝ 98.50ի եւն. :

## ՄԱՐՈՔԻ ՍՈՒԼԹԱՆԸ ԳԱՀԸՆԿԷՑ

Կացութիւնը միշտ ծանր է Մարոքի մէջ: Նոր կրօնապետին (իմամ) կուսակից փաշաները եւ ցեղապետները անոր անուանումէն առաջ հանդիսաւորապէս գահընկէց հռչակած են ներկայ Սուլթանը : Իրազեկներու կարծիքով, Մարոքի ժողովուրդին 2/3ին համար այլեւս գոյութիւն չունի Սուլթանը :

« Ֆրանս – Սուար » 8 միլիոն կը հաշուէ Մարոքի բնակիչները, որոնց մէջ կան 400.000 Ֆրանսացիներ, 200.000 Հրեաներ եւ հարիւր հազարի չափ ուրիշ Եւրոպացիներ: Մնացեալ 7.200.000 Իսլամներէն հինգ միլիոնը կուսակից են նոր կրօնապետին՝ Ալիտ Մուհամմէտ Արաֆայի: Եւ կը սպասեն որ Ֆրանսա անյապաղ ճշդէ իր դիրքը, եթէ չուզեր անելի մը մատնուիլ Մարոքի մէջ: Կը վախցուի որ ծանր դէպքեր պատահին իսլամական մեծ տօնին առթիւ :

Նախարարական խորհուրդը միշտ նիստ կը գումարէ, ելք մը գտնելու համար : Կը վախցուի որ ափրիկեան միւս գաղթավայրերն ալ խլրտին: Ահաբեկումները հետզհետէ աւելի յաճախադէպ կը դառնան Թունուզի մէջ: Առջի օր ութ հոգի եւս սպաննուեցան :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՒՍՏՐԻՈՅ կառավարութիւնը նոր ծանուցագիր մը ուղղեց Խ. Միութեան, խնդրելով փութացնել հաշտութեան կնքումը, քանի որ արեւմտեան երեք պետութիւնները եւս աւլին կրճատել ծրագիրը :

ՋՐԱԾԻՆ ՌՈՒՄԲԻ փորձ մը կատարուած է Խ. Միութեան մէջ, ինչպէս կը ծանուցանէ կուսակցութեան պաշտօնաթերթը, «Փրաւտա» : Ուաշինկթընի մէջ ալ կը խոստովանին թէ ուժգին պայթիւն մը արձանագրած էին Օգոստ. 12ին :

ԻՏԱԼԻՈՅ դահլիճը վերջնապէս կազմուեցաւ վարչապետութեամբ Փելլայի : Միապետականները խոստացան աջակցիլ:

ԵԳԻՊՏՈՍԻ նախագահը, զօր. Նէկիպ

## ՎԱՐՁԱԿԱՆ ԱԶԴ

Ջերմապէս կը խնդրենք մեր գաւառի գործակալներէն եւ բաժանորդներէն շարունակել իրենց վճարումները չէք–փոստալի միջոցաւ, դիւրացնելու համար վարչութեան գործը, մանաւանդ որ թղթատարական գործադուլը մեծապէս վնասած է նաեւ մեր գանձումներուն :

Մեր բոլոր բաժանորդները պիտի ստանան իրենց թերթերը ամենիջապէս որ թղթատարը ընդունի: Ներողութիւն կը խնդրենք այս ակամայ յապաղումներուն առթիւ : ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը ցաւինք որ կարելի չեղաւ ղրկել բաժանորդներուն թերթերը, թղթատարական գործադուլին հետեւանքով :

Կարգ մը կարգադրութիւններ եղած են մօտակայ արուարձաններու համար:

Այսպէս , Իսի լէ Մուլինոյի բաժանորդները իրենց թերթերը կրնան ստանալ Զատիկեան սրճարանէն :

×

ԱԼՖՈՐՎԻԼԻ բաժանորդներն ալ կրնան իրենց թերթերը ստանալ դիմելով ընկեր Բարթող Փափազեանի:

×

ԳԼԱՄԱՐԻ բաժանորդներն ալ կրնան իրենց թերթերը ստանալ ընկեր Հրանտ Սամուէլէն :

### «ՅԱՌԱՋ»Ի ԾԱՆՈՒՑՈՒՄ ՏԱԼՈՎ ՈՒՇ – ԿԱՆՈՒԽ ԿԸ ՇԱՀԻՔ

« Յառաջ » բազմաթիւ բաժանորդներ ունի ոչ միայն Ֆրանսայի եւ հարեւան երկիրներու, այլ եւ Միջին Արեւելքի, Ալժերիոյ, Մարոքի, Թունուզի մէջ եւ Ափրիկէի խորերը, (Քամերուն, Քոնկօ եւն.) :



### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ.

Թարգմանութիւն, ներածութիւն եւ ծանօթութիւններ դոկտոր Ստ. Մալխասեանի : Ընտիր թուղթի վրայ եւ գեղեցիկ տպագրութեամբ, լաթակազմ. 600 էջ: Տպ. «Յուսաբեր», Գահիրէ. 1953: Գին 3 տոլար :

Փնտռել հայ գրավաճառներու մօտ:



Մէքքէ հասնելով իր ուխտը կատարեց հանդիսաւորապէս:

ԴԷՊԻ ԱՆԴՈՒՆԴԸ կատարուած փորձը յաջողութեամբ վերջացաւ Փիէռ Սէն Մարթէնի մէջ: Ֆրանսացիները կորեցին մրցանիշը, մինչեւ 730 մեթր իջնելով :

### ՓՆՏՌԵՑԷՔ

## ՌՈՒԲԷՆԻ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆԻ ՄԸ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

150 օրինակ միայն ամբողջ Եւրոպայի համար :

Եօթը հատորը միասին, կ'արժէ վեց հազար Ֆր. Թղթատարի ծախքով :

Ստանալու համար դիմել՝

Mme Anna Ter Minassian
La Résidence : 5, Rue Henri Regnault,
St. Cloud ( S. et O. )
FRANCE

Բոլոր առաքումները
Contre remboursement

կամ անձամբ դիմել Յառաջի վարչութեան :

### ՈՒՐԱԽԱՑՈՒՑԷՔ ՊԱՏՍՊԱՐԵԱԼՆԵՐԸ

Փարիզի Աղքատախնամի « Հանգստեան Տուն»երու գործադիր յանձնախումբը, ջերմապէս կը խնդրէ Փարիզի եւ շրջանի հայրենակիցներէն իրենց միջոցներուն ներած չափով, մեր սիրելի ծերունիները զբաղեցնող եւ զուարճացնող ամէն տեսակ առարկաներ նուիրել մեր զոյգ «Հանգստեան–Տուներուն »: Նախընտրաբար, կը փափաքինք ընդունիլ, աստիօ գործիք, երգապնակ (տիսք) ,գիրք, ամսաթերթ, զանազան խաղեր (թղթախաղ, տամա, տոմինօ, ճատրակ եւն.) :

Ինչ ալ ըլլան նուէրները, յանձնախումբը մեծ ծզոհունակութեամբ ու երախտագիտութեամբ պիտի ընդունի զանոնք եւ այժմէն մեր սրտագին շնորհակալութիւնները կը յայտնենք :

Նուիրատուները կրնան դիմել՝ 15 ռիւ Ժան Կուժօն կամ հեռաձայնել ROQ.29-00 ուղղակի նուիրատուներու տունէն վերցնելու համար նուէրները :



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.




ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆ
ՏՈՒՆ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ
ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆ

քալէին: Զօր. Կիյոմ կացութիւնը հաղորդեց Փարիզ, ուր Նախարարական խորհուրդը անընդհատ նիստ կը գումարէր: Կառավարութիւնը անմիջապէս հրամաններ հաղորդեց եւ զօրավարը Սուլթանին ներկայացաւ: Սուլթանը մերժեց հրաժարիլ: Ասոր վրայ զօրավարը յայտնեց թէ կառավարութիւնը որոշած է հեռացնել զինքը: Մէկ ժամ վերջ Սուլթանը եւ իր զաւակները կը հեռանային Ռապաթէն (մայրաքաղաք), ուր ստուարաթիւ զինուորներ եւ ոստիկաններ դիրք բռնած էին: Միեւնոյն ատեն պաշարման վիճակ կը հաստատուէր ամբողջ երկրին մէջ:

Աքսորականները Քորսիքա ղրկուած էին զօր. Կիյոմի օդանաւով, ժամը 15ին: Պալատը պաշարուած էր ոչ միայն զինուորներով, այլեւ հրասայլերով, թնդանօթներով եւ գնդացիրներով:

Ինչպէս կ'երեւայ, կառավարութիւնը նախապէս որոշած էր միջին ճամբայ մը գտնել, առաջարկելով որ Սուլթանը հրաժարի եւ իրեն յաջորդէ երկրորդ զաւակը: Բայց Սուլթանը կը մերժէր, իսկ անհամար լեռնականներ քաղաք իջնելով սպառնալից դիրք մը բռնած էին: Ուրեմն անխուսափելի կը համարուէին խռովութիւնները: Այս հեռանկարին առջեւ, փոքրադոյն չարիք նկատած են հեռացնել Սուլթանը:

Այս առթիւ հետեւեալ զեկոյցը հաղորդուեցաւ վարչապետութեան դրասենեակէն, —

« Պ. Ժոռժ Պիտօ Նախարարական խորհուրդին առջեւ պարզեց այս առտու ստացուած տեղեկութիւնները: Կը հաստատուէր թէ մարզպանին հաշտարար ձեռնարկները այնպիսի դժուարութեանց հանդիպած են որ միայն զինեալ ուժով կարելի է հարթել: Այս պարագան ծայր աստիճան ծանրակշիռ տնօրինութիւն մը պիտի ըլլար խալամական մեծ տօնի նախօրեակին եւ Ֆրանսայի հաւատարիմներուն դէմ: Մարզպանը հրահանգ ստացաւ բոլոր անհրաժեշտ միջոցները ձեռք առնելու, որպէսզի ընդհանուր ապահովութեան հետ փրկուի գահուն ապագան անվիճելի պայմաններու մէջ, համաձայն աւանդութեան եւ հովանաւոր պետութեան իրաւունքներուն եւ պարտականութեանց »:

Կարգ մը թերթեր կը կարծեն թէ զօր. Կիյոմ գործած է իր հայեցողութեամբ, աւելի մեծ չարիքներ խափանելու համար:

Ամէն պարագայի մէջ, նոր կացութիւն մը ստեղծուած է Մարոքի մէջ եւ արտակարգ միջոցներ ձեռք առնուած են, բարեկարգութիւնը պահպանելու համար: Ի հարկին ձերբակալութիւններ պիտի կատարուին եւ միջոցներ ձեռք պիտի առնուին որպէսզի Պէրպէրները իրենց լեռները քաշուին:

Երէկ նոր զեկոյց մը հրատարակուեցաւ որ կ'ըսէ թէ Ֆրանսական կառավարութիւնը կ'ուզէ որ «քաղաքական, տնտեսական եւ ընկերային բարենորոգումներու նոր շրջան մը բացուի Մարոքի մէջ, վարչական վերակազմութեամբ եւ աւելի սերտ գործակցութեամբ »:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ՓԱՐԻԶԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԵԱՆ* տարեդարձին առթիւ մեծ հանդիսութիւններ տեղի պիտի ունենան այսօր եւ վաղը:

*ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻԱՅԷՆ* մասնաւոր պատուիրակութիւն մը գնաց Մոսկուա, խորհրդակցելու եւ հրահանգներ ստանալու համար:

*ՔՈՐԷԱՅԻ* հաշտութեան խորհրդաժողովը պիտի գումարուի Ժընեւի մէջ, համաձայն վերջին տեղեկութեանց: Վիշինսկի չափաւոր ճառ մը խօսեցաւ, ժպտելով ամերիկեան պատուիրակին, ինչ որ բարենշան երեւոյթ մը մը կը համարուի բանդէտներու կողմէ:

*ԵԼՄՏԱԿԱՆ* նախարարը, Պ. Էտկառ Ֆոռ, մանրամասնօրէն պարզելով իր ծրագիրը, յայտարարեց թէ կարգ մը միջոցներ ձեռք պիտի առնէն, գիները իջեցնելու համար:

*ԱՏՐՊԷՋԱՆԻ* մէջ վարչական փոփոխութիւնները կը շարունակուին: Մէկ ամսուան միջոցին պաշտօնանկ եղած են երեք ականաւոր դէմքեր:

*ԵԳԻՊՏՈՍԻ* փոխ–վարչապետը, գնդ. Կամալ Նասըր, որ փաստօրէն կը վարէ նախագահութիւնը, կոչ մը ուղղեց ժողովուրդին որպէսզի «պատրաստ ըլլան կռուելու որեւէ ատեն եւ որեւէ տեղի մէջ, անգլիական գրաւման դէմ»:

ԿԱՐԴԱՑԷ՛Ք ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷ՛Ք «ՅԱՌԱՋ»Ը

## ՎԱՐՉԱԿԱՆ ԱԶԴ

Ջերմապէս կը խնդրենք մեր գաւառի գործակալներէն եւ բաժանորդներէն շարունակել իրենց վճարումները *չէք–փոսթալի* միջոցաւ, դիւրացնելու համար վարչութեանս գործը, մանաւանդ որ բդթատարական գործադուլը մեծապէս վնասած է նաեւ մեր գանձումներուն:

Մեր բոլոր բաժանորդները պիտի ստանան իրենց թերթերը ամենիջապէս որ բդթատարը ընդունի: Ներողութիւն կը խնդրենք այս ակամայ յապաղումներուն առթիւ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը ցաւինք որ կարելի չըլլար ղրկել բաժանորդներուն թերթերը, բդթատարական գործադուլին հետեւանքով:

*ՓԱՐԻԶԻ ԵՒ ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐՈՒ* բոլոր բաժանորդները կրնան իրենց թերթերը ստանալ դիմելով խմբագրատուն:

×

*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ* բաժանորդները իրենց թերթերը կրնան ստանալ Զատիկեան սրճարանէն:

×

*ԱԼՖՈՐՎԻԼԻ* բաժանորդները դիմեն ընկեր Բարթող Փափազեանի:

×

*ԳԼԱՄԱՐԻ* բաժանորդներն ալ կրնան իրենց թերթերը ստանալ ընկեր Հրանտ Սամուէլէն:

## «ՅԱՌԱՋ»Ի ԾԱՆՈՒՑՈՒՄ ՏԱԼՈՎ ՈՒՇ – ԿԱՆՈՒԽ ԿԸ ՇԱՀԻՔ

« Յառաջ » բազմաթիւ բաժանորդներ ունի ոչ միայն Ֆրանսայի եւ հարեւան երկիրներու, այլ եւ Միջին Արեւելքի, Ալժերիոյ, Մարոքի, Թունուզի մէջ եւ Ափրիկէի խորերը, (Քամերուն, Քոնկօ, Եթովպիա եւն.):



*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
### *ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ*

Թարգմանութիւն, ներածութիւն եւ ծանօթութիւններ դոկտոր Ստ. Մալխասեանի: *Ընտիր թուղթի վրայ եւ գեղեցիկ տպագրութեամբ, լաթակազմ.* 600 էջ: Տպ. «Յուսաբեր», Գահիրէ. 1953: Գին 3 տոլար:

*Փնտռել հայ գրավաճառներու մօտ:*



*ՓՆՏՌԵՑԷՔ*



## *ՈՒՐԱԽԱՅՈՒՑԷՔ ՊԱՏՍՊԱՐԵԱԼՆԵՐԸ*

*Փարիզի Աղքատախնամի « Հանգստեան Տուն»երու գործադիր յանձնախումբը, ջերմապէս կը խնդրէ Փարիզի եւ շրջանի հայրենակիցներէն իրենց միջոցներուն ներած չափով, մեր սիրելի ծերունիները զբաղեցնող եւ զուարճացնող ամէն տեսակ առարկաներ նուիրել մեր զոյգ «Հանգստեան–Տուներուն »: Նախընտրաբար, կը փափաքինք ընդունիլ, ռատիօ գործիք, երգապնակ (տիսք), գիրք, ամսաթերթ, զանազան խաղեր (թղթախաղ, տամա, տոմինօ, ճատրակ եւն.):*

*Ինչ ալ ըլլան նուէրները, յանձնախումբը մեծ ծղոհունակութեամբ ու երախտագիտութեամբ պիտի ընդունի զանոնք եւ այժմէն մեր սրտագին շնորհակալութիւնները կը յայտնենք:*

*Նուիրատուները կրնան դիմել՝* 15 ռիւ *Ժան Կուժօն կամ հեռաձայնել* ROQ.29-00 *ուղղակի նուիրատուներու տունէն վերցնելու համար նուէրները:*



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

պայթէր Հիրոշիմայի վրայ, յաջորդ Օ-գոստոս 6ին: Հետեւաբար ուխտը հիւլէական շրջանէն առաջ կազմուած է եւ դէպքերը զլած անցած են զայն, գործադրութենէն առաջ: Երկրորդ, ուխտը պակասաւոր է անոր համար որ անոր հեղինակները՝ Նախագահ Րուզվէլթ, վարչապետ Զըրչիլ եւ սպարապետ Սթալին Ազգաժողովը կը նկատէին տեսակ մը երկարաձգում պատերազմական շրջանի եռապետութեան: Ատոր համար էր որ Մ. Նահանգներուն, Մեծն Բրիտանիոյ եւ Խ. Միութեան առաջարկները առաջնակարգ հեղինակութիւն մը կը սահծեն Ապահովութեան խորհուրդին: Վեթոյի իրաւունքը կապուած է Ապահովութեան Խորհուրդին եւ ընդհ. ժողովը միայն յանձնարութիւններ կրնայ ձեւակերպել: Եւ երրորդ, Ազգաժողովին Ուխտը պէտք եղածին պէս չի ճշդեր օրէքններու հրատարակումը, ապահովելու համար միջազգային կարգուսարքը»:

Նախարարը եզրակացուց թէ Մ. Նահանգները համաձայն են ընդհանուր խորհրդակցութիւն մը կատարելու՝ Ուխտին վերաքննութեան համար:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԻՐԱՆԻ* վարչապետը կարեւոր տեսակցութիւն մը ունեցաւ Թեհրանի ամերիկեան դեսպանին հետ: Ներկայ էր նաեւ արտաքին գործերու խորհրդականը: Կ'ըսուի թէ խօսակցութեան գլխաւոր նիւթն էր Իրանի ելմտական տագնապը: Մ. Նահանգները տրամադիր են 25 միլիոն տոլար տալու, բայց Իրան 30 միլիոն աւելի կը պահանջէ: Միեւնոյն ատեն խորհրդակցութիւններ կը կատարուին Ուաշինկթընի եւ Լոնտոնի միջեւ, անմիջական օգնութիւն մը հասցնելու համար: Երկու երկիրները տրամադիր կ'երեւան վերաքննելու իրենց քաղաքականութիւնը, որպէսզի սովետական ազդեցութիւնը չզօրանայ Իրանի մէջ: Զօր. Զահետի ունկնդրութեան ընդունած է նաեւ ֆրանսական դեսպանը:

*ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ* խորհրդարանը լսելով Մոսկուայի հետ կնքուած համաձայնութեանց զեկուցումը, միաձայնութեամբ քուէարկեց բանաձեւ մը որ կ'առաջարկէ առժամեայ կառավարութիւն մը կազմել, ազատ ընտրութիւններ կատարելու համար ամբողջ Գերմանիոյ մէջ: Վիճաբանութեանց ընթացքին փոխ-վարչապետը, Ուլպրիխտ, բուռն ճառ մը խօսեցաւ արեւմտեան Գերմանիոյ վարչապետին՝ Տոքթ. Ատընաուըրի դէմ, «ամենավատ գերման դաւաճանը» կոչելով զայն:

*ՄՈՍԿՈՒԱՅԻ* անթելէն առնելով, կարգ մը թերթեր կը գրեն թէ Հայաստանի մէջ ալ վարչական փոփոխութիւններ կատարուած են: Ի միջի այլոց պաշտօնանկ եղած է առեւտրական նախարարը:

*Խ. ՄԻՈՒԹԵԱՆ* հանրապետութիւններէն բուն Ռուսիոյ գերագոյն խորհուրդին մէջ ելմտական նախարարը չարք մը լուրջ թերութիւններ մատնանշեց, ինչպէս եւ աւելորդ ծախքեր եւ մսխում՝ հում նիւթերու: Միութեան առեւտրական նախարարը, Պ. Ա. Միկոյեան ճառ մը խօսելով պահանջեց զարկ տալ դաստիարակչական աշխատանքին՝ գործակցական վարչութեանց մէջ:

*ԹՄԲՐԵՑՈՒՑԻՉ ԴԵՂԵՐՈՒ* միջազգային որջ մը երեւան հանուեցաւ Փարիզի մէջ: Ցանցը կ'երկարի մինչեւ Թուրքիա, Իտալիա եւ Ամերիկա:

*ՏԱՐԱԳԻՐՆԵՐՈՒ* միջազգային կազմակերպութիւնը (ԻՐՕ) վերջնապէս պիտի փակուի Սեպտեմբերին: Տեղեկագիրը կ'ըսէ թէ կազմակերպութիւնը աւելի քան մէկ միլիոն տարագիրներ տեղաւորած էր, 700 գաղթակայաններ բացած՝ Եւրոպայի եւ Ասիոյ մէջ եւն.: Կազմակերպութեան Փարիզի գրասենեակը, որ անձնագիր ճարած էր 300.000 տարագիրներու, փակուեցաւ անցեալ Յունուարին:

*ԱՆԳԱՐԱ* հասած է ամերիկեան պատուիրակութիւն մը, որուն գլխաւոր գործը պիտի ըլլայ զարկ տալ տնտեսական ձեռնարկներու:

*ԳԱՀԻՐԷԻ* մէջ բացառիկ ժողով մը պիտի գումարեն արաբ եւ ասիական պետութեանց ներկայացուցիչները: Բոլորն ալ դժգոհ են Անգլիոյ եւ Մ. Նահանգներու բռնած դիրքէն:

*ԵՐԿՐԱՇԱՐԺԻ* նոր ցնցումներ պատահեցան Յունաստանի Քեֆալոնիա եւ Զանթա կղզիներուն մէջ, քանդելով մնացեալ աւերակները:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Թղթատարական վարչութեան երեք շաբթուան գործադուլը վերջացած ըլլալով, այսօրուընէ սկսեալ կանոնաւորապէս պիտի ղրկուին *Յառաջ*ները:

Մեր փրանսացի պաշտօնակիցներուն հետ, մենք ալ ներողութիւն կը խնդրենք ակամայ յապաղումներուն համար:

Վարչութիւնս ամէն ջանք պիտի թափէ որպէսզի թերթին նախորդ բոլոր թիւերը հասնին ամէն բաժանորդի: Բայց, երբեք շաբաթներու ընթացքին ստեղծուած խճողումը կրնայ տեղի տալ թիւրիմացութեանց, թէ թերթերուն եւ թէ նամակատուներու համար: Թերեւս զոյգ թիւեր ղրկուին մանաւանդ արձակուրդի գացած բաժանորդներուն:

Կը խնդրենք նաեւ այն բաժանորդներէն եւ գործակալներէն որոնք առկախ հաշիւներ ունին, փութացնել իրենց վճարումները: Երկարատեւ գործադուլը դժուարին կացութեան մը մատնած է նաեւ վարչութիւնս, որ ամէն զոհողութիւն յանձն առաւ, թերթին հրատարակութիւնը ապահովելու համար անընդհատ:

Կանխայայտ շնորհակալութեամբ:

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

---

ԳՆԵԼ ԵՒ ԿԱՐԴԱԼ

ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ

(Դիմելով հայ գրավաճառներուն)

ՅՈՒՇԱՊԱՏՈՒՄ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ (1890 – 1950) *Հրատ. Հ. Յ. Դ. Բիւրոյի: 636 էջ: Ընտիր տպագրութեամբ եւ պատկերազարդ: Տպ. «Հայրենիք»:*

Հ. Յ. Դ. ՎԱԹՍՈՒՆԱՄԵԱԿ (1890 – 1950), *կազմեց՝ Ս. Վրացեան: 265 էջ: Տպ. «Հայրենիք»: Պատկերազարդ:*

*ԻՄ ՅՈՒՇԵՐԸ*, *Վահան Փափազեան: Ա. եւ Բ. հատոր: Երկու ստուար հատորներ, պատկերազարդ:*

*Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ*, *հրատ. Կեդր. Կոմիտէի, Փարիզ:*

*ԴԻՊՔԵՐ ՀԱՅ ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԷՆ. Գ. Լազեան: 400 մեծադիր էջ: Պատկերազարդ: Տպ. «Յուսաբեր»:*

*ԳՐԱԿԱՆ ԳՈՀԱՐՆԵՐ* միջնադարեան աշխարհաբար գրականութեան եւ ժողովրդական բանահիւսութեան: *Կազմեց՝ Կ. Սասունի: 524 մեծադիր էջ: Հրատ. Համազգային ընկերութեան: Տպ. Պէյրութ:*

*ԲՈԼՇԵՒԻԶՄԸ ԵՒ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ, կուռ ուսումնասիրութիւն մը՝ վաւերական փաստերով եւ վկայութիւններով: 675 էջ: Գրեց՝ Վ. Նաւասարդեան: Տպ. «Յուսաբեր»:*

*ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Ա. մաս: (Նախնական շրջանէն մինչեւ քրիստոնէութիւն): Գրեց* Գ. Գիւզալեան, 372 էջ: *Հրատ. Համազգային ընկերութեան, Պէյրութ:*

*ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԵՐՁԱՒՈՐ ԱՐԵՒԵԼՔԻ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ, Ա. հատոր:* Հնագոյն շրջաններէն մինչեւ Տիգրան Մեծի կայսրութեան անկումը: *Գրեց՝ Գ. Գիւզալեան, 615 էջ: Տպ. Համազգային ընկ., Պէյրութ:*

*ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ (պատկերներ, դատումներ եւ ուսումնասիրութիւններ):* Գալուստ Անտրէասեանի: *Յառաջաբան Կ. Սասունի: Տպ. Պէյրութ:*



*ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆ. Կ. Խաչի Սեւրանի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Տիկին Սոնա Խաննեանի՝ իր զաւկին Օր. ՎԻՏԻԱ ԽՍԱՆԵԱՆի մահուան առթիւ: Ցաւակցութիւն նաեւ բոլոր պարագաներուն:*



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս շաբաթ իրիկուն «Օհանջանեան» ակումբը: Կարեւոր օրակարգ:*

× Կառավարութիւնը ծրագիր մը մշակած է, կարգ մը գիներ իջեցնելու համար: Եթէ բարոյական միջոցները չբաւեն, կանոններ պիտի սահմանեն:

× Գործադուլներուն ընդհ. կորուստը կը հաշուեն 30 միլիոն ֆրանք:

× Վերաշինութեան նախարարը ծրագիր մը յօրինած է, որուն համաձայն պետական վարչութիւնները պիտի պարպեն 5000 յարկաբաժիններ, բնակարան ճարելու համար ժողովուրդին: Միեւնոյն ատեն նոր շէնքեր պիտի շինուին գլխաւոր կայարաններու մթերանոցներուն վրայ (Պաթինեօլ եւն.):

× Բանակցութիւնները կը շարունակուին Հնդկաչինի կայսեր եւ Ֆրանսական կառավարութեան միջեւ, երկրին անկախութեան մասին: Բամպոճի հետ կատարուած բանակցութիւնները յանկարծ ընդհատուեցան, անհամաձայնութիւն մը ծագած ըլլալով: Բամպոճ կը պահանջէ անմիջապէս պարպել Ֆրանսական զօրքը: Համաձայնութիւն գոյացած է ոստիկանական եւ դատական իշխանութեանց փոխանցման մասին. բայց Ֆրանսա կը մերժէ վաւերացնել, մինչեւ որ զինուորական խնդիրը չկարգադրուի:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՒՍՏՐԻՈՅ գրաւման բանակի չորս հրամանատարութիւնները որոշեցին ջնջել հաղորդակցութեանց վրայ հաստատուած հսկողութիւնը: Գրաքննութիւնն ալ վերջնապէս ջնջուած է: Ռուսերը կարեւոր դէրք մը եւս պարպեցին: — Արեւմտեան պետութեանց արտաքին նախարարներու փոխանորդները Բշ. օր ժողով պիտի գումարեն Լոնտոնի մէջ, խորհրդակցելու համար հաշտութեան դաշնագրի մասին:

ԵՐԵՔ ՄԻԼԻՈՆ կապոց (քոլի) ամերիկեան ուտելիք բաշխուած է Պերլինի մէջ, Յուլիս 17էն ի վեր, հակառակ արեւելեան Գերմանիոյ ոստիկանութեան արգելքին:

ԱՆԳԼԻՈՅ հիւլէական հետազօտութեանց վարչութիւնը պաշտօնանկ ըրաւ երկու ռուսածին մասնագէտներ:

ՀԻՆԳԱԿԱՆ ՏԱՐԻ բանտարկութեան դատապարտուեցան, Մ. Նահանգներուն մէջ, հինգ ականաւոր համայնավարներ: Ուրիշ երկու հոգի ալ ձերբակալուեցան դաշնակ ոստիկաններու կողմէ, Քալիֆորնիոյ լեռներուն մէջ:

ՃԵՐՄԱԿ ՀԱՅ պիտի ծախուի Անգլիոյ մէջ, այս շաբթու: Տասնըմէկ տարիէ ի վեր արգիլուած էր ճերմակ հացը:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ մեծագոյն հանրապետութեան՝ բուն Ռուսիոյ Գերագոյն Խորհուրդը հաստատեց երեք փոխ-վարչապետներու պաշտօնանկութիւնը: Միեւնոյն ատեն վեց նոր նախարարներ նշանակուեցան:

ՓԱՐԻԶԻ մեծ գործարաններէն Տըլահէյ ձեռնարկած է արձակելու իր պաշտօնէութեան մէկ երրորդը, մօտ 600 հոգի: Անցեալ մարտին ալ ճամբուած էին 230 աշխատաւորներ: Հաստատութիւնը սովորաբար 1600 պաշտօնեաներ ունէր:

ՄԱՐՈՔԻ վերջին դէպքերուն առթիւ 315 ձերբակալութիւններ կատարուած են: Ուժտայի փաշային դատարանը 197 հոգի դատապարտեց վեց ամիսէն երկու տարի բանտարկութեան, Օգոստոս 16ի ցոյցին առթիւ: Դատապարտեալներուն մէջ կը գտնուին 14 պատանիներ, 16 տարեկանէն վար: Գահընկէց Սուլթանին կիներէն 16ը իրենց հայրերուն վերադարձուեցան, մնացեալ 25-30ը Քորսիքա պիտի բնակին, եւր 50 հոգինոց բնակարան մը ճարուի:

ԱՐԱԲԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ընդհ. քարտուղարը յայտարարեց թէ բողոքներու ժամանակը անցած է եւ թէ «աւելի ազդու միջոցներու պիտի դիմեն, Մարոքի դատը պաշտպանելու համար»:

ՀԵՌԱՋԱՅՆԻ պաշտօնեաներու գործադուլը կը ծաւալի Մ. Նահանգներու գլխաւոր քաղաքներուն մէջ:

ԹՄՐԵՑՈՒՑԻՉՆԵՐՈՒ միջազգային ցանցին վարիչներէն հինգ հոգի ձերբակալուեցան:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Թղթատարական վարչութեան երբեք շաբթուան գործադուլը վերջացած ըլլալով, այսօրուընէ սկսեալ կանոնաւորապէս պիտի ղրկուին *Յառաջ*ները:

Մեր փրանսացի պաշտօնակիցներուն հետ, մենք ալ ներողութիւն կը խնդրենք ակամայ յապաղումներուն համար:

Վարչութիւնս ամէն ջանք պիտի թափէ որպէսզի թերթին նախորդ բոլոր թիւերը հասնին ամէն բաժանորդի: Բայց, երբեք շաբաթներու ընթացքին ստեղծուած խճողումը կրնայ տեղի տալ թիւրիմացութեանց, թէ թերթերուն եւ թէ նամակատուներու համար: Թերեւս զոյգ թիւեր ղրկուին մանաւանդ արձակուրդի գացած բաժանորդներուն:

Կը խնդրենք նաեւ այն բաժանորդներէն եւ գործակալներէն որոնք առկախ հաշիւներ ունին, փութացնել իրենց վճարումները: Երկարատեւ գործադուլը դժուարին կացութեան մը մատնած է նաեւ վարչութիւնս, որ ամէն զոհողութիւն յանձն առաւ, թերթին հրատարակութիւնը ապահովելու համար անընդհատ:

Կանխայայտ շնորհակալութեամբ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ԱԲՐ. ԱՃԷՄԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Փոխան ծաղկեպսակի կը նուիրեն. — Տէր եւ Տիկին Օհաննէս Սարգիսեան 500 ֆրանք, Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին: Տէր եւ Տիկին Մարտիրոս Գրաճեան 500 ֆր. Կարմիր Խաչին, 500 ֆրանք Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին, Պ. Պ. Բարգէն եւ Գուրգէն Քիշիշեան երկու հազար ֆրանք Փարիզի Հայ Մարզական Միութեան: Տէր եւ Տիկին Ալիքսան Նուրեան հազար ֆրանք Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին:

Ստանալ «Յառաջ»էն:





## ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ

### ՏԱՐԵԴԱՐՁԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

որ յետաձգուած էր անձրեւին եւ գործադուլին պատճառով, տեղի պիտի ունենայ այս կիրակի, Վալապրի անտառին մէջ, տեւելով ամբողջ օրը, նոյն յայտագրով:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, մասնակցութեամբ բոլոր ենթակոմիտէներու եւ խումբերու, Նոր Սերունդի, Շրջ. վարչութեան, 11 մասնաճիւղերով եւ Կապ. Խաչի մասնաճիւղերու:

Պատուոյ նախագահութեամբ Կարտանի քաղաքապետ եւ երեսփոխան Պ. ՎԻՔԹՈՐ ՍԱՎԻՆԻ:

Կը նախագահէ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ: Կը խօսին Պ. Կ. ՓՈԼԱՏԵԱՆ եւ ընկեր Հ. ՏԱՍՆԱՊԵՏԵԱՆ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Զանազան խաղեր եւ մրցումներ: Բացարձակապէս արգիլուած է անտառին մէջ կրակ վառել կամ որեւէ բան ծախել:

Մուտքը ազատ է



Imp. Araxes - 46, rue Richer, Paris.

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կը վերաբացուի Սեպտ. 17ին: Արձանագրութեան համար դիմել վարժարան հինգշաբթի եւ շաբաթ առաւօտ ժամը 9-12:

Հեռաձայն Ռէնսի 172

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար լաւ խոհարարուհի մը (կամ խոհարար) որ լաւ կերակուր եփել գիտնայ: Գոհացուցիչ պայմաններ:

Դիմել վարժարանը, Պուլվառ տիւ Նոռ, Լը Ռէնսի:



ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ. — Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ այս կիրակի ժամը 10ին հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ Անթիլիասի դպրեվանքին վերատեսուչը, Տ. ԴԵՐԵՆԻԿ ԵՊԻՍԿՈՊՈՍ: Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ հայ հասարակութիւնը բազմութեամբ ներկայ ըլլալ այս արարողութեան:

